## Օրինագիծ Տէրսիմի նուաճման համար

Անգարայէն կը հաղորդեն թէ Մունզուր (Մնձուր, Տէրսիմ) կուսակալութեան կազմութեան օրինագիծը այս օրերս Ազգ. Ժողովին պիտի տրուի։ Այս օրէնքով, յիշեալ շրջանին ժողովուրդը պիտի ազատի կարգ մը աղանդներու եւ միւթէկալլիպներու ազդեցութենէն։

Կառավարութեան կողմէ առժամեայ զինուորական վարչութիւնով մը ձեռք առնուելիք միջոցները, միջավայրին բացառիկ պայմաններուն եւ պահանջներուն պիտի յարմարին։

Մունզուրի կուսակալութիւնը ընդհ. ժողով չպիտի ունենայ։ Հրամանատարը, պէտք եղած պարագային, Թաղապետական նախագահութեան պարտականութիւններն ալ դայմագամներուն պիտի տայ։ Կուսակալի պաշտօնին պիտի կոչուի Զօր. Ապտուլլահ։

## Նոր երկաթուղի,- Խարբերդ-Տիգրանակերտ-Վան

Թուրքիոյ հանրօգուտ գործավար Ալի Չէթինգայա, Տիարպէքիրէն վերադարձին, հետեւեալ կարեւոր յայտարարութիւնը ըրած է Անատոլի մէջ.

—«Էլազիզէն Վան եւ անկէ սահմանը երկարելիք երկաթուղին առաջին հետազօտումը կատարել տուինք մարմնի մը միջոցաւ։ Տիարպէքիր - Վան մասը գրեթէ հաստատ է էլազիզ — Վան մասին։ Այս վերջին գիծը պիտի անցնի Բալուէն, Ճապաղջուրէն եւ Մուշէն։ Երկու ուղղութիւններն ալ ունին իրենց ընդհանուր եւ մասնաւոր պայմանները։ Պաշտօնական մարմիններու կարծիքը առնելէ յետոյ, պիտի որոշենք թէ ո՞րը նախընտրելու է, Տիարպէքիր — Վա՞ն թէ էլազիզ — Վան»։

*** Անգարայի եւ արեւելեան ու հարաւային նահանգներու միջեւ սաւառնակի հաղորդակցութիւն պիտի հաստատուի։

## Անգլիոյ կարմիրները կը դժգոհին

Անգլիոյ համայնավար կուսակցութիւնը, որ դանդաղելի քանակութիւն մը կը կազմէ, քանի մը անգամ դիմած էր աշխատաւորական կուսակցութեան, միացեալ ճակատ առաջարկելով։ Պատասխանը միշտ ալ եղաւ մերժական։ Իսկ անցեալ սեպտեմբերին, Արհեստակցական Միութեանց համագումարը բացարձակապէս մերժեց որ եւ է գործ ունենալ համայնավարներուն հետ։

Բայց բոլշեւիկները յուսահատիլ չեն գիտեր։ Այս անգամ նոր նամակ մը ուղղելով աշխատաւորականներուն, Անգլիոյ համայնավար կուսակցութեան նախագահը կ'առաջարկէ պարզապէս միանալ աշխատաւորական կուսակցութեան։ Այս առթիւ յոյս կը յայտնէ թէ իրենց դիմումը պիտի ընդունուի «ի լաւ բանուոր դասակարգին»։Իր առաջարկը արժեցնելու համար, նախագահը դիտել կու տայ թէ վերջին ընտրութեանց առթիւ համայնավար կուսակցութիւնը օգնեց շատ մը աշխատաւորական երեսփոխաններու յաջողութեան։ «Համայնավար կուսակցութիւնը ամբողջովին տրամադիր է աշխատաւորական կուսակցութիւնը համարելու իբրեւ դաշնակցային օրկան մը բանուորական միացեալ դասակարգի, պայմանաւ որ աշխատաւորական կուսակցութիւնը արդարացնէ իր յաւակնութիւնները իբրեւ ներկայացուցիչ բանուորական շարժման բոլոր հատուածներուն, համայնավար կուսակցութիւնն ընդունելով իբրեւ կցորդ կազմակերպութիւն»։

*** Քանի հազար ընկերվարականներ եւ համայնավարներ ամբոխային ժողով մը գումարեցին Նիւ Եորքի մէջ, միացեալ ճակատ կազմելու համար գրամատիրութեան, ֆաշականութեան եւ պատերազմի դէմ։ Ժողովը ունէր վճռաբանական հանգամանք։ Ելքը յայտնի չէ։

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀԻԹԼԷՐ ճառ մը խօսելով «Տէօյչլանտ - Հալլէ» (դաշինք Գերմանիոյ) չնորհին բացման առթիւ, յայտարարեց թէ անձնատուր չպիտի ըլլան պարենաւորման դժուարութեանց։ «Մեր դրօշը երբեք վար չպիտի իջնէ։ Մենք պատրաստ ենք ամէն բանի եւ պիտի դիմագրաւենք բոլոր վտանգները։ Մենք կանք եւ պիտի մնանք։ Մենք ոչ մէկ բանէ կը վախնանք»։

ԵԳԻՊՏՈՍԻ «ՎԱՖՏ»ը (ազգ. միութիւն) որոշեց պատուիրակներ ղրկել Եգիպտոսի բոլոր քաղաքները, հանգանակութիւն կատարելու եւ հականգլիական պայքար մղելու համար թէ երկրին եւ թէ արտասահմանի մէջ։

ՋՈՐՍ ՀՈԳԻ ԽԵՂԴՈՒԵՑԱՆ Սէն Ռաֆայէլի առջեւ, ջրօղանաւի մը անկման հետեւանքով։ Երկու հոգի ազատեցան։ Ջրօղանաւը զինուորական մարզանքներ կը կատարէր։

ԱՆԴՐԱՆԻԿԻ ՑՈՒՇԱՐՁԱՆԻ ՇԻՆՈՒԹԵԱՆ յանձնախումբը ժողովի կը հրաւիրէ բոլոր միութիւնները, չորեքշաբթի, (4 դեկտեմբեր) իրիկուան ժամը 9էն, 125. Bld. Magenta. Café Թաղայի ներքնայարկը։ Առաջին ժողովը մեծամասնութիւն գտած չըլլալով, այս երկրորդին մէջ ներկաներու թիւը բաւական պիտի համարուի։

---




Le Gérant: H. STEPHAN

17, Rue Dameame, PARIS (13) · Imprimerie A. DER (AGOPIAN)

թիւնը, հաղորդեց վարչապետին հետ ունեցած խօսակցութիւնը, առաջարկուած չորս պայմաններու մասին: Պ. Լավալ յանձն առած ըլլալով ընդ առաջ երթալ, արմատականները տրամադիր են վստահութիւն յայտնելու եւ դահլիճը փրկելու:

## Ի՞նչ պայմաններ պիտի առաջարկուին

Սըր Ս. Հօրի ճառը լաւ տպաւորութիւն գործեց Լոնտոնի եւ Փարիզի մէջ. իսկ Հռոմ կը շարունակէ վերապահ դիրք մը բռնել: Իտալական կառավարութիւնը որ եւ է իրական հիմ չի տեսներ լաւատեսութեան համար: Սակայն եւ այնպէս, իրազեկներ կը հաւատան թէ բաւական յառաջացած են Անգլիոյ եւ Ֆրանսայի արտաքին նախարարութեանց մասնագէտներուն աշխատանքները միջին ճամբայ մը գտնելու համար: Անգլիա եւ Ֆրանսա սկզբունքով համաձայն են կարգ մը հողեր ձգելու Իտալիոյ: Ազգերու Դաշնակցութեան շրջանակներուն մէջ ալ կը կարծեն թէ Իտալիոյ պիտի ձգուին Տանաքիլ երկրամասը, իսկ Օկատէնի անապատին հետ, որ առաջարկուած էր նախապէս, պիտի յատկացնեն Եթովպիոյ աւելի բարեբեր մէկ շրջանը, Օկատէնի եւ Քէնիայի միջեւ: Իտալիոյ պիտի ձգուի նաեւ Թիկրէի նահանգին մէկ մասը, Ատուա քաղաքով: Իսկ Եթովպիա պիտի ստանայ դէպի ծով ելք մը, Զէյլա նաւահանգիստով, բրիտանական Սոմալիի մէջէն: Միեւնոյն ատեն տնտեսական առաւելութիւններ պիտի շնորհուին Իտալիոյ. Եթէ Իտալիա չընդունի այս պայմանները, քարիւղի արգելքը պիտի վճռուի յառաջիկայ հինգշաբթի եւ պիտի գործադրուի անյապաղ, թերեւս Ծնունդէն առաջ:

«Հռոմէն կը հեռագրեն թէ Մուսոլինի շատ կարեւոր յայտարարութիւններ պիտի ընէ երեսփ. ժողովին մէջ, պարզելով Իտալիոյ տեսակէտները:

## Զէնքի գաղտնի մթերանոց մը

«Փօփիւլէռ» կը գրէ թէ զէնքի գաղտնի մթերանոց մը երեւան հանուած է Շուապի լը Ռուայի մէջ: Գտնուած են երկու գնդացիր, 30 պատերազմական հրացան, 22 մեծ եւ փոքր ատրճանակ եւ մեծաքանակ ռազմանիւթ: Այս յայտնութիւնն ալ մեծ գրգռութիւն պատճառած է ձախակողմեան շրջանակներու մէջ:

## Շուները ազդանշան օդանաւի դէմ

Անհամար շուներ կը գտնուին Եթովպիոյ մէջ: Թափառելով գիւղէ գիւղ եւ մինչեւ Ատտիս – Ապէպայի փողոցներուն մէջ: Անոնք ընդհանրապէս կարեւոր ծառայութիւններ կը մատուցանեն: Ոչ միայն բորենիներու եւ անգղերու հետ կը մաքրեն ճամբաները, լափելով սատկած անասուններու դիակները եւ ուրիշ մնացորդներ այլ եւ... կ'օգնեն պատերազմական գործողութեանց: Օկատէնէն հասած ամերիկացի բժիշկ մը կը պատմէ թէ շուներն են որ զօրքը արթուն կը պահեն օդանաւային ռմբակոծութեանց դէմ: Առաջին արշաւանքին ատեն, 50 շուներ սպաննուեցան: Օդանաւերու ռմբակոծութեան առաջին եւ վերջին զոհերն էին անոնք, ժողովուրդը ժամանակին հեռացած ըլլալով: Երկրորդ արշաւանքի մը ատեն, շուները լսելով օդանաւերու մեքենաներուն որոտումը, մտահոգութեան նշաններ ցոյց տուին եւ բնազդաբար թաքստոց մը փնտռեցին ծակերու եւ մացառներու մէջ: Երրորդ անգամ, շուները, որոնց լսողութիւնը շատ աւելի սուր է քան մարդկայինը, պահուեցան օդանաւերու թռիչքէն շատ աւելի առաջ: Ասոր վրայ բնակիչները հասկցան թէ շատ կարեւոր է հետեւիլ շուներու շարժումներուն: Եւ հիմա, անմիջապէս որ տեսնեն թէ շուները մտահոգութիւն կը ցուցնեն եւ թաքստոց կը փնտռեն, կը հասկնան թէ վտանգի մը առջեւ կը գտնուին եւ իսկոյն զգուշական միջոցներ ձեռք կ'առնեն:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱԹԷՆՔԷՆ կը հեռագրեն թէ դէկտ. 4ին երեք ուժանակներ պայթեցան, մէկը՝ Զօր. Հաճիսարանթոսի բնակարանին, մէկը՝ թերթի մը տպարանին առջեւ, իսկ երրորդը՝ օդանաւային գնդապետ Էքոնոմիուի տան առջեւ, միայն նիւթական վնասներ պատճառելով:

ՉԻՆԱՍՏԱՆ ԲՈՂՈՔԱԳԻՐ ՄԸ ՈՒՂՂԵՑ Ճափոնի ոտնձգութեանց դէմ, յիշեցնելով 9 պետութեանց դաշնագիրը, որ կ'երաշխաւորէ երկրին հողային ամբողջութիւնը եւ անկախութիւնը:

ԲՈՒՌՆ ԿՌԻՒՆԵՐ ԿԸ ՄՂՈՒԻՆ Մաքալէի հարաւակողմը, հաբէշական բանակը յարձակողականի ձեռնարկած ըլլալով: Իտալացիները զգուշութեամբ կը շարժին: Հեռագրի մը համաձայն, Իտալացիները կարեւոր դիրք մը լքած են Ճիճիգայի ճակատին վրայ (Հարար):

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ արտաքին նախարարը բողոքեց Ճափոնի, հիւսիսային Չինաստանի մէջ կատարուած ոտնձգութիւններուն առթիւ, յիշեցնելով զանազան դաշնագիրներ:

18 ԱՄԻՍ ԲԱՆՏԱՐԿՈՒԹԵԱՆ դատապարտուեցաւ Գերմանացի մը, որ սեռային յարաբերութիւններ ունեցած էր հրեայ կնոջ մը հետ:

# Հ. Յ. Դ.

### Փարիզ

ԽՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Վրէժ խումբի ժողովը այսօր Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին Ակումբին մէջ:

ՎԱՐԴԱՆ Ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը վաղը Կիր. կէս օրէ յետոյ ժամը 2.30ին ընկեր Ճիհանեանի բնակարանին մէջ, Առնուվիլ-լէ-Կոնէս: Կը հրաւիրուին Հրայր, Ռազմիկ եւ Յաւրոս խումբերու բոլոր ընկերները: Օրակարգ՝ շարունակութիւն նախորդ ժողովի:

### Գաւառ

ՎԻԷՆԻ Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Քրիստափոր եւ Մուշատ խումբերու բոլոր ընկերները այսօր Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին խաժակ Ակումբին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼԻ «Ընկեր-կարօ» Ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը վաղը Կիրակի երեկոյեան ժամը 5ին «Դրօշակ»ի Տան մէջ: Խիստ կարեւոր օրակարգ:

ԼԻՈՆԻ Կոմիտէն ընկերական ժողովի կը հրաւիրէ Սէն-Մօրիսի Զարդարեան խումբի ընկերները վաղը Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Կոմիտէի ներկայացուցիչը:

ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ «Անտօք» Ենթակոմիտէն ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ Կռիւզ եւ Կեփին խումբերը, Թալաւորէի եւ Ռօլթայի ընկերները վաղը Կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին սովորական հաւաքատեղին:

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» Ենթակոմիտէի և «Քրիստափոր» խումբի ընդհ. ժողովը վաղը Կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին սովորական հաւաքատեղին: Օրակարգ՝ շարունակութիւն նախորդ ժողովի:

ԳՐԻՒՅԷԼԻ «Նեմրութ» խումբը ժողովի կը հրաւիրէ իր անդամները վաղը Կիրակի կէս օրէ վերջ ժամը 4ին ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:



17, Rue Damesme, PARIS (13)

Imprimerie A. DER (AGOPIAN)

Le Gérant: H. STEPHAN

Նորէն թէր ու դէմ վիճաբանութիւններ ծագեցան, այս օրէնքներուն քուէարկութեան առթին:

Ցետոյ հարցապնդումները փակուած ըլլալով, երբ քանանեւեր առաջարկուեցան, վստահութիւն յայտնելու համար կառավարութեան: Ընկերվարականներն ու համայնավարները նորէն ընդդիմացան, բայց արմատականները մեծամասնութեամբ գոհացում ստացած ըլլալով, ուժ տուին դահլիճին, որ վստահութիւն շահեցաւ 219ի դէմ 351 ձայնով:

Այս նիքը մեծ գոհունակութիւն պատճառեց աջակողմեան շրջանակներու, ինչպէս եւ Լոնտոնի եւ Հռոմի մէջ: Սեղանաւորական հրապարակն ալ նպաստաւոր տպաւորութիւն կրեց եւ փրանքն ու փրանսական արժեթուղթերը զգալապէս բարձրացան, հակառակ այն իրողութեան որ իբր վեց միլիառ փրանքի ոսկի պակսած է Պանք տը Ֆրանսէն, վերջին հինգ շաբաթներու ընթացքին:

## Առանձնաշնորհեալ խմբակցութիւն մը կը լուծուի

Անցեալ մայիսին խորհրդային իշխանութիւնը լուծեց Հին Բոլշեւիկներու ընկերակցութիւնը, իսկ յունիսին՝ նախկին քաղաքական դատապարտեալներու միութիւնը: Ուզելով ամբողջովին հաշուեյարդարի ենթարկել նմանօրինակ բոլոր ընկերակցութիւնները եւ ջնջել անոնց անդամներուն տրուած մասնաւոր առաւելութիւնները, այս անգամ որոշուած է լուծել «Կարմիր բանակի նախկին կռուողներու եւ անդամներու խմբակցութիւնները»: Ասոնք այն քաղաքացիներն են որոնք զէն ի ձեռին կռուած են բոլշեւիկեան գաղափարին համար, 1917էն 1920 կամ նոյնիսկ 1905ի յեղափոխութեան առթին: Այս ընկերակցութեանց անդամները առանձնաշնորհներ կը վայելէին, մասնաւորապէս նիւթական եւ ընկերային (աժան բնակարան, գնումներ, ճամբորդութիւն եւայլն):

## ԻՏԱԼԱՑԻՆԵՐԸ ՌՄԲԱԿՈԾԵՑԻՆ ՏԷՍԻԷՆ
### Ուր կը գտնուի արքայից արքան

### 1000 ռումբ, 32 սպաննեալ, 200 վիրաւոր

Դեկտեմբեր 6ին իտալական օդանաւերը ռմբակոծեցին Տէսիէն, ուր կը գտնուի հապէշական գլխաւոր բանակը, հրամանատարութեամբ կայսեր: Առ նուազն 1000 ռումբ նետուեցաւ քաղաքին վրայ, ծանր վնասներ պատճառելով: Զոհերուն թիւը կը հաշուեն 32 սպաննեալ եւ 200 վիրաւոր: Կայսրը, որ անվնաս մնացած է, անմիջապէս հեռագիր մը ուղղեց Ազգերու Դաշնակցութեան, բողոքելով թէ Իտալացիները սկիզբէն ի վեր կը ջանան ժողովուրդը ոչնչացնել ոչ թէ զինուորներով, այլ մեքենական միջոցներով եւ իրենց գաղթավայրերէն հաւաքուած բանակներու միջոցաւ: Հեռագիրը միջազգային օրէնքի բռնաբարում կը նկատէ բաց քաղաքներու եւ գիւղերու ռմբակոծութիւնը, մանաւանդ որ կիներ եւ մանուկներ կը սպաննուին եւ Կարմիր Խաչի հիւանդանոցներ կը վնասուին: Կայսրը այս առթիւ կը յիշէ թէ ռմբակոծուած է նաեւ ամերիկեան հիւանդանոցը, ինչպէս կը հաստատեն չորս բժիշկներ եւ օտար թերթերու թղթակիցները: Ռմբակոծութենէն վիրաւորուած են նաեւ երկու թղթակիցներ, մէկը ամերիկեան, միւսը փրանսական թերթի մը: Կ'ըսուի թէ իտալական օդանաւ մը վար առնուած է:

Քաղաքին բնակչութիւնը ահուսարսափի մատնուեցաւ այս ռմբակոծութեան հետեւանքով, որ սկսաւ առտուան ժամը 8ին, երեք թեւերով: Աւելի վերջը ռմբակոծուեցաւ նաեւ Կոնտար քաղաքը, ուր սպաննուեցան չորս կիներ եւ երկու մանուկներ: Իսկ հարաւային ճակատին վրայ, Հարրարի վերեւ օդանաւեր սաւառնեցան առանց ռումբ նետելու:

Վերջին լուրերու համաձայն, ռմբակոծութիւններն ու կռիւները կը շարունակուին սաստկօրէն, մասնաւորապէս Մաքալէի ճակատին վրայ:

**ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ**

*ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ՀԵՏԶՀԵՏԷ ԿԸ ԾԱՆՐԱՆԱՅ հիւսիսային Չինաստանի մէջ: Ճափոնցիները կը շարունակեն զօրք համախմբել եւ օդանաւերով սպառնալ Թիէնցինի: Ճափոնական զօրքին հրամանատարը ազդարարեց թէ անհաշիւ զինուոր պիտի ղրկեն, եթէ Չինաստան խափանէ իրենց ճամբան:*

*ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ԱԹՈՌԷՆ ՊԻՏԻ ԱԶԱՏԻ Հաուփթման, որ մահուան դատապարտուած էր իբրեւ առեւանգիչն ու սպանիչը Լինտպէրկի երախային: Նիւ Ճըրսիի նահանգապետը պաշտօնապէս հաղորդեց թէ բանտ գացած եւ տեսնուած է դատապարտեալին հետ եւ մէկ ժամ խօսակցելով, այն համոզումը գոյացուցած է թէ բուն առեւանգիչը ան չէ: Հաւանական է որ «ներումներու առենը» ժողով գումարէ բանտին մէջ:*

*ՆՈՐ ԽՌՈՎՈՒԹԻՒՆՆԵՐ ծագեցան Գահիրէի մէջ, դեկտեմբեր վեցի գիշերը: Հինգ հոգի ձերբակալուեցան, մէկ հոգի մեռաւ, եօթը ցուցարարներ վիրաւորուեցան:*

*ԱՆԳԼԻՈՅ արտաքին նախարարը Փարիզ հասաւ երէկ, օդանաւով, եւ երկար տեսակցութիւն մը ունեցաւ Պ. Լավալի հետ, օրուան հարցերու մասին:*

*ԾՆՈՒՆԴԻ ԾԱՌԸ ԱՐԳԻԼՈՒԵՑԱՒ Իտալիոյ մէջ: Ֆաշական կուսակցութեան քարտուղարը հրամայեց «մահուան դատապարտել» այդ սովորութիւնը որ իտալական չէ, այլ դուրսէն ներածուած: Շրջաբերականը կը յանձնարարէ հսկել որ այլեւս Ծնունդի ծառեր չծախուին:*

---

ԿԻՍ ԻԿԻՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ այսօր Փարիզի կայանէն կ'երգէ առտուան ժամը 9·45էն մինչեւ 10, ղեկավարութեամբ Պ.Գ. Ալէմշահի:

---





























Le Gérant: H. STEPHAN

17, Rue Dameame, PARIS (13) — Imprimerie A. DER (AGOPIAN)

## Թուրք մամուլը եւ Փարիզի ծրագիրը

«Թայմզ»ի թղթակիցը կը հեռագրէ Պոլսէն, դեկտեմբեր 15 թուականով.— Թուրք մամուլը դառնօրէն կը քննադատէ անգլեւֆրանսական ծրագիրը՝ իտալեւհապէշական հարցին լուծման մասին։ «Ճումհուրիյէթ» հեգնութեամբ կը հարցնէ թէ Եթովպիա նախայարձակ պիտի համարուի՞ եթէ մերժէ հաւանիլ իր անդամատման եւ կ'աւելցնէ թէ Ազգերու Դաշնակցութիւնը ոչ միայն ամէն հեղինակութիւն կորսնցնելու, այլ եւ աշխարհի առջեւ ծիծաղելի դառնալու վտանգին առջեւ կը գտնուի։

Մասնաւոր խօսակցութեանց մէջ Թուրքերը առ հասարակ դիտել կու տան թէ Փարիզի մէջ մշակուած առաջարկներով Մեծն Բրիտանիա կը մերժէ իր մինչեւ հիմա պաշտպանած գաղափարները։ Անոնց կարծիքով, այդ առաջարկները կը յիշեցնեն Թուրքերուն համար այնքան ծանօթ մեթոտները, երբ մեղբածոր բառեր եւ չանդալից բանաձեւեր առարինանարար կ'առաջնորդէին Օսմ. կայսրութեան անդամատման. Տիրող կարծիքն այն է որ, եթէ Ազգերու Դաշնակցութիւնը բանի ընդունիլ տայ անգլեւֆրանսական առաջարկը, պարզապէս պիտի կատարէ այն դերը զոր նախապէս կը կատարէր եւրոպական պետութեանց խմբակցութիւնը։ Իսկ Թուրքիա երբեք չի կրնար մոռնալ այդ պատմութիւնը.

## «Մասնիի Օր»ը Իտալիոյ մէջ

ԿՐԱԿԸ ԶԳԵԼՈՎ ՊԻՏԻ ՀԱԼԵՑՆԵՆ ԱՑՍՈՐ

Ֆաշական կուսակցութեան ընդհ. քարտուղարը շրջաբերական մը հրատարակեց, որուն համաձայն այսօր, չորեքշաբթի, 18 դեկտեմբեր, պիտի տօնուի «Հարսանեկան Մատնիներու Օր»ը։ Միեւնոյն ատեն պիտի կատարուի Փոնթինիայի նոր աւանը։ Այս առթիւ ամբողջ երկիրը պիտի դրօշազարդուի արշալոյսէն մինչեւ վերջալոյս։ Բոլոր Հայոց մը պիտի գրուի ամէն պատերազմական յիշատակարանի առջեւ, երկրին բոլոր մասերուն մէջ եւ կուսակցական պահակախումբ մը բարեւ պիտի կենայ իւրաքանչիւրին առջեւ։ Երբ Իտալուհիներըներկայանան իրենց հարսանեկան մատնիները յանձնելու համար, այդ նուէրները անմիջապէս պիտի նետուին հալոցին մէջ, մինչ երգչախումբերը յաւուր պատշաճի երգեր պիտի երգեն։

Ամէն կողմէ նուէրներ կը հասնին պետական գանձը։ Փոփոփ մայրաքաղաքին 16 մարզպետները, որոնք բացարձակ առանձնութեան մէջ կ'ապրին, պետութեան յանձնեցին իրենց մատնիները։ Անոնք չատ գեղեցիկ բանուածք ունին, խաչելութեան պատկերներով եւ արքեպիսկոպոսին կողմէ կը տրուին իւրաքանչիւր մայրապետի, երբ քօղը* կ'անցընէ գլխուն։

1936 յունուար 1էն սկսեալ պետական մենաշնորհի պիտի վերածուի պանանի առեւտուրը, փոխադրութենէն մինչեւ չոգենաւը։

*** Լոնտոնի թերթերը կը գրեն թէ Եգիպտոսի Իտալացիներէն հաւաքուած ոսկիներն ու դոհարեղէնները պիտի գործածուին մնացին Սուէզի ջրանցքին տուրքերը եւ Եգիպտոսի մէջ գնուած քարիւղի եւ պաշարի փոխարժէքը։

## Գերմանիոյ հուսոսուն մախառնեսնութիւնը

Ապահովաբար այս մէկը ձեր միտքէն չէր անցներ։

Գերմանական Թուիթէնպախ քաղաքին մէջ, որ կը գտնուի Հոլանտայի սահմանագլուխին վրայ, խումբ մը ագարակապաններ առնէ մը ի վեր իրենց հաւերը կը ղրկէին Հոլանտա, ուր կերը աժան է, որպէսզի իրենց փորը կշտացնեն։ Յետոյ կը վերադարձնէին Գերմանիա, որպէսզի հաւկիթը հոն ածեն, քանի որ աւելի կ'արժէ քան Հոլանտայի մէջ։ Երկու երկիրներուն ոստիկանութիւններէն օգտուելու այս խաղը վերջապէս երեւան հանուեցաւ մաքսային իշխանութեան կողմէ, բայց շատ ուշ, — արդէն 2,000,000 միլիոն հաւկիթ Գերմանիա փոխադրած էին առանց մաքսի։ Ամբաստանեալները դատուելով, ութ հոգի դատապարտուեցան հինգական ամիս բանտարկութեան։

ՁԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԱՊԸ ՔՍԱՆ ԿԱՐԴԻՆԱԼՆԵՐ ձեռնադրելով, ճառ մը խօսեցաւ եւ յայտարարեց թէ եկեղեցին խաղաղութիւն կ'ուզէ հիմնուած արդարութեան, ճշմարտութեան եւ գթութեան վրայ։ Քսան կարդինալներէն 15ը Իտալացի են, միւսները պատկանող այլ երկ

ՉԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ կը կատարուին թէ Հիւսիսային եւ թէ Հարաւային ճակատներուն վրայ, Իտալացիներու եւ Հապէշներու կողմէ։ Հապէշական ամենամեծ բանակը կեդրոնացած է Օկատէնի ճակատին վրայ։

ՏԱՍԸ ՌՈՒՍԱՆՈՂՆԵՐ ՍՊԱՆՆՈՒԵՑԱՆ եւ ուրիշ 50 հոգի վիրաւորուեցան Փէքինի մէջ, երբ ցոյցեր կը կատարէին ճափոնական գրաւման դէմ։ Ցուցարարներուն թիւն էր 500, երկու համալսարաններէ

### ՀԱՑԿԵՐՈՅԹ

Հայ Գրողներու ընկերակցութիւնը կայանդէի եւ Ծննդեան տօներուն առթիւ ընկերական հացկերոյթ մը կազմակերպած է որ տեղի պիտի ունենայ 4 յունուար շաբաթ գիշեր ժամը 8.30ին, 29, 31 Bld du Temple, ճաշարան «Bonvalet». Métro République.

Ներկայ պիտի ըլլան Հայ Գրողներու ընկերակցութեան անդամները իրենց ընտանիքով, ինչպէս նաեւ համակիրներ։

Իւրաքանչիւր մասնակցող 10 ֆր. պիտի վճարէ։

Մասնակցիլ փափաքողները պէտք է դիմեն մինչեւ 25 դեկտեմբեր.

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Մեր խորին ցաւակցութիւնը ու վշտակցութիւնը կը յայտնենք մեր սրտակից ազգական Արմենակ Աւետիսեանի եւ զաւակներուն, ինչպէս նաեւ Սօֆիա եւ Հրանդ Ելոյեանի եւ իրենց պարագաներուն իրենց սիրելի կնոջ, ազգական եւ քրոջ՝

Տիկ. ԱՐԱՔՍԻ ԱՒԵՏԵԱՆի

վաղաժամ եւ կսկծալի մահուան առթիւ որ տեղի ունեցաւ Նոյեմբեր 27ին Լիոնի մէջ։

Տէր-Վարդանեան Եղբարք

Մարսէյլ

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Ներսէս Ալլահվէրտեան, Տէր եւ Տիկին Հրանդ Ռւնանեան եւ պարագաները իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին Տիկին Թերեզա Ալլահվէրտեանի մահուան առթիւ։

### ՆՈՒԻՐԱՏՈՒԹԻՒՆ

Մարսէյլ, Ա. Գէր.— 70
ՊԵՐԼԻՆ, Ֆր.— 54.20։
ՄԷՈՏՈՆ, Ա. Արթ.— 70։
ԼԻՈՆ, Հայր Թ. քհնյ.—35։
ՓՕ, Գ. Նաւ.— 210։
ԼԱ ՍԷՅՆԵ ՍԻՒՐ ՄԷՌ, Մ. Կար.—35։
ԱՐԼ, Վարպ.— 35։
ՔԼԷՅՄՈՆ ՖԷՐԱՆ, Թիւթ.— 140
ԹԷՀՐԱՆ, Մ. Գար.— 260։
ՎԻԼՄՈՆՊԼԸ, Տիկ. Եկ.— 105։
ՊԵԼԿՐԱՏ, Մ.— 87.35։
ՎԻԷՆ, Ն. Խ.— 105։
ՍԷՆ ՄԱՐԹԷՆ, Ա. Թ.— 35։
ՎԱԼԱՆՍ, Գործ.— 267։
ՄԱՐՍԷՅԼ, Գործ.— 850։
ՎԻԷՆ, Ե. ՄԿ.— 140.
ՍԷՆ ՏԸՆԻ, Ն. Թամ.— 140։

Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13)

# ԲԱՑՈՒԱԾ Է «ՅԱՌԱՋ»Ի ՊԱՐԳԵՒԱՒՈՐ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

## 1936 ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՌԹԻՒ

1935 ԴԵԿՏԵՄԲԵՐ 15ԷՆ ՄԻՆՉԵՒ 1936 ՅՈՒՆՈՒԱՐ 31

*ԲՈԼՈՐ ԱՆՈՆՔ ՈՐ «ՅԱՌԱՋ»Ի ԲԱԺԱՆՈՐԴ Կ'ԱՐՁԱՆԱԳՐՈՒԻՆ ՏԱՐԵԿԱՆ, ՎԵՑԱՄՍԵԱՅ ԿԱՄ ԵՌԱՄՍԵԱՅ, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ ԵՒ ԿԱՄ ԿԸՆՈՐՈԳԵՆ ԻՐԵՆՑ ԲԱԺԱՆԵԳԻՆԸ, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ ՏԱՐԵԿԱՆ, ՎԵՑԱՄՍԵԱՅ ԿԱՄ ԵՌԱՄՍԵԱՅ, ԻԲՐԵՒ ՊԱՐԳԵՒ ՊԻՏԻ ՍՏԱՆԱՆ ՋԱՆԱԶԱՆ ԳԻՐՔԵՐ, ՀԱՄԱՁԱՅՆ ԻՐԵՆՑ ՎՃԱՐՄԱՆ։*

*ԳԻՐՔԵՐՈՒ ՑԱՆԿԸ ԲԱԺՆՈՒԱԾ Է ՏԱՐԵԿԱՆ, ՎԵՑԱՄՍԵԱՅ ԵՒ ԵՌԱՄՍԵԱՅ ԳԼՈՒԽՆԵՐՈՒ, ԵՒ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԸ ԱԶԱՏ ԵՆ ԸՆՏՐԵԼՈՒ ԻՐԵՆՑ ՆԱԽԸՆՏՐԱԾ ՀԱՏՈՐՆԵՐԸ։*

*ԹՂԹԱՏԱՐԻ ԾԱԽՔԸ ՄԵՐ ՎՐԱՅ, ԲԱՑԻ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԷՆ։*

*ՏԱՐԵԿԱՆ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ (ԿԱՆԽԻԿ)* —

1. ՎԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ, Օ. Մխիթարեան (25 փրանք)։ 2. ՎԻՇԱՊՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ, Տիկին Հայաստան Գէորգեան (15 փրանք)։ 3. ԼԵՌՆԵՐՈՒ ԽՈՐՀՈՒՐԴԸ, Կ. Սասունի (15 փրանք)։ 4. ՀԱՅ – ԹԱԹԱՐԱԿԱՆ ԸՆԴՀԱՐՈՒՄՆԵՐԸ, Ա. Գիւլխանդանեան (15 փրանք)։ 5. ԱՆՁՐԵՒ, Համաստեղ (15 փրանք։ 6. ՄԵՂՆԻՆԵՐ, Շ. Նարդունի (15 փրանք)։ 7. ԿԱՍԻԱՆԻ, վէպ Բիւզանդական կեանքէ, (20 փրանք)։ 8. ՀԱՅԻՆ ԵՐԳԸ, Դ. Վարուժանի (25 փրանք։ 9. ԵՐԳԻԾԱԿԱՆ, Ն. Պէշիկթաշլեանի (15 փրանք)։ 10. ՀԱՅ ՔՆԱՐ, բնդարձակ երգարան (20 փրանք)։

*«ՆԱՀԱՏԱԿ ԳՐԱԳԷՏՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»ՈՒ ՄԱՏԵՆԱՇԱՐԷՆ ՀԵՏԵՒԵԱԼ ՀԱՏՈՐՆԵՐԸ*

*Թիւ 1.— Ռ. Զարդարեանի «Արձակ էջերը» — 2.— Հրանդի «Գեղջի նամակներ» — 3.— Գ. Տէր Կարապետեանի «Տարօնի աշխարհը» — 4.— Գեղամ Բարսեղեանի «Արձակ էջերը» — 5.— Ար. Արփիարեանի «Ընտրուած էջեր» — 6.— Գ. Զօհրապի «Արձակ էջեր, քերթուածներ եւ ծանօթ դէմքեր» — 7.— Տ. Չէօքիւրեանի «Վանքը» — 8.— Օհան Կարօի հատորը — 9.— Եր. Օտեանի «Ընկեր Փանջունին եւ Մայլմարը»։*

*(Իւրաքանչիւր հատորին գինն է 20 ֆրանք)։*

*ՎԵՑԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ (ԿԱՆԽԻԿ)* —

*1. Վալանթին, վէպ (20 Ֆր.) — 2. Շրջիկ Մատոննան (15 Ֆր.) — 3. Մեծասքանչ Մուրացկանները, Ե. Պարոնեանի (10 Ֆր.) — 4. Փնջիկ Երգարան, (10 Ֆր.) — 5. Զրուցատրութիւն Ֆրանս — հայ (15 Ֆր.) — 6. Հայաստանի աշխարհագրութիւնը, Ե. Պալճեանի (10 Ֆր.) — 7. Երեք ընկերներ, Ղ. Մելոյեանի (10 Ֆր.) — 8. Հ. Յ. Դաշնակցութեան քաղաքական ուղին, Գ. Գիւզալեանի (10 Ֆր.) —9. Արե՛ւ, Արե՛ւ, Փայլակ Միքայէլեանի (10 Ֆր.)։*

*ԵՌԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ (ԿԱՆԽԻԿ)* —

*1. Նահապետ Նահապետեան, Թատերախաղ, Ա. Սարմազեանի (7.50 Ֆր.) — 2. Գծից դուրս, նոյն հեղինակէն (5 Ֆր.) — 3. Ապրիլեան Եղեռնը, Կ. Սասունի (5 Ֆր.) — 4. Կաթուղիկէ, Ա. Ահարոնեանի (5 Ֆր.) — 5. Մայիս 28 (5 Ֆր.) — 6. Ընկերվարութիւնը եւ ճնշուած ժողովուրդները, Լէվինսկի, Թարգմանեց Կ. Սասունի (5 Ֆր.) — 7. Խրիմեան Հայրիկ, Ե. Ֆրանգեանի (5 Ֆր.) — 8. Հայաստանի քարտէսը, Ե. Պալճեանի (5 Ֆր.) — 9. Սայաթ Նովա (6 Ֆր.) — 10. Մշակոյթի Օրը (10 Ֆր.)։*

*ՀԵՏԶՀԵՏԷ ԿԸ ԾԱՆՈՒՑՈՒԻՆ ՈՒՐԻՇ ՀԱՏՈՐՆԵՐ ԵՒՍ։*

---

## Հ. Յ. Դ.

**Գաւառ**

*ԼԻՈՆԻ «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, վաղը ուրբաթ իրիկուն, ժամը 8.30ին, 181, Cours Lafayette, «Զարդարեան» Գրադարանը։*

---

*ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է Հ. Յ. Դ. Ռոմանի «Անդրանիկ» խումբի յունուար 11ին սարքած ցերեկոյթը։*

---

### ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ

Խորհրդ. Հայաստանի գրականութեան նուիրուած Գ. եւ վերջին հաւաքոյթը

*Դեկտ. 23ին, երկուշաբթի երեկոյ ժամը ճիշդ 8.30ին, Սոսիէթէ Սավանթի D. սրահին մէջ։*

*Ուր խօսք պիտի առնեն ծանօթ մտաւորականներ, վիճաբանողները կրնան մասնակցիլ մտքերու փոխանակութեան։*

Մուտքը ազատ է։ Ոչ ոքի հրաւէր չէ ուղարկուած։

---

# ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՀԱՄԵՐԳ

## ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ Պ. **Վ. ՍԱՐԳՍԵԱՆԻ**

Տեղի կ'ունենայ **Palais des Congrès**ի մէջ (Լէբօզլիսիօնի պարտէզը)

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ 25 ԴԵԿՏԵՄԲԵՐ, ԿԷՍ ՕՐԷ ԵՏՔ ԺԱՄԸ 4ԻՆ

*Յայտագիրը կը պարունակէ նոր խմբերգներ կոմիտաս վարդապետի գործերէն, ինչպէս նաեւ Սպենդիարեանի եւ Ցարգսեանի պարանուագները, լարախումբով։*

Ժողովրդական գիներ 5, 7 եւ 10 ֆրանք։

Տոմսերը կը գտնուին Միութեան անդամներուն եւ ծանօթ վաճառատուներուն մօտ.— Իր. Թէլեան, 8A. rue Francis-Préssense եւ «Մասիս» ակումբին 57A. rue Nationale.

---

# ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*ՖՐ. Կ. ԽԱՉԻ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

25 դեկտ. չորեքշաբթի երեկոյ ժամը *8.30*ին Հայ Ակումբին մէջ

Պ. ՊՈՒԼՎԱՐ ՔԱՐՆՕ ԱԼՖՈՐՎԻԼ

*կը ներկայացուի՝ «ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ»*

Ղեկավարութեամբ՝ դերասան Յ. ՈՒԶՈՒՆԵԱՆԻ, եւ մասնակցութեամբ տեղւոյս սիրողներու իր խումբով։

*Տոմսերու գին 5 եւ 3 ֆրանք։*

---



---



---



---



---



---



---



---

*ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ*

***Տէր եւ Տիկին Եուշիկ Դաւիթեան, Տէր Ե. քհյ. Մխիթարեան եւ իր ընտանիքը իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն Պ. Գեղամ Բառօեանեանի եւ իր զաւակներուն (Հալէպ), Տէր եւ Տիկին Լեւոն Տօնիկեանի եւ զաւակներուն (Փարիզ), իրենց սիրելի կնոջ, մօր եւ քրոջ Տիկ. ԱՊՐՇՈՒՄ ԲԱՏՕՀԱՆԵԱՆի զառնաղէտ մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ Նոյեմբեր 3ին, Հալէպի մէջ։***

Մարսէյլ, 15 Դեկտեմբեր, 1935

---



---



---


**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER AGOPIAN**

**17, Rue Dumesme, PARIS (13)**


---



---



---



---



---



---



---



---

# ԲԱՑՈՒԱԾ Է «ՅԱՌԱՋ»Ի ՊԱՐԳԵՒԱԻՈՐ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

## 1936 ՏԱՐԻ ՇՐՋԱՆԻՆ ԱՌԹԻՒ

1935 ԴԵԿՏԵՄԲԵՐ 15ԷՆ ՄԻՆՉԵՒ 1936 ՅՈՒՆՈՒԱՐ 31

*ԲՈԼՈՐ ԱՆՈՆՔ ՈՐ «ՅԱՌԱՋ»Ի ԲԱԺԱՆՈՐԴ Կ'ԱՐՁԱՆԱԳՐՈՒԻՆ ՏԱՐԵԿԱՆ, ՎԵՑԱՄՍԵԱՅ ԿԱՄ ԵՌԱՄՍԵԱՅ, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ ԵՒ ԿԱՄ ԿԸՆՈՐՈԳԵՆ ԻՐԵՆՑ ԲԱԺՆԵԳԻՆԸ, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ ՏԱՐԵԿԱՆ, ՎԵՑԱՄՍԵԱՅ ԿԱՄ ԵՌԱՄՍԵԱՅ, ԻԲՐԵՒ ՊԱՐԳԵՒ ՊԻՏԻ ՍՏԱՆԱՆ ՋԱՆԱԶԱՆ ԳԻՐՔԵՐ, ՀԱՄԱՁԱՅՆ ԻՐԵՆՑ ՎՃԱՐՄԱՆ:*

*ԳԻՐՔԵՐՈՒ ՑԱՆԿԸ ԲԱԺՆՈՒԱԾ Է ՏԱՐԵԿԱՆ, ՎԵՑԱՄՍԵԱՅ ԵՒ ԵՌԱՄՍԵԱՅ ԳԼՈՒԽՆԵՐՈՒ, ԵՒ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԸ ԱԶԱՏ ԵՆ ԸՆՏՐԵԼՈՒ ԻՐԵՆՑ ՆԱԽԸՆՏՐԱԾ ՀԱՏՈՐՆԵՐԸ:*

*ԹՂԹԱՏԱՐԻ ԾԱԽՔԸ ՄԵՐ ՎՐԱՅ, ԲԱՑԻ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԷՆ:*

